ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆ Է՝ ՊԼՅՈՒՍ ԱՄԲՈՂՋ ԵՐԿՐԻ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՈՒՄԸ, ՊԼՅՈՒՍ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՔԻՄԻԱՑՈՒՄԸ:

**Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ**

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 24
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1963

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԱՌԱՎԵԼԱԳՈՒՅՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՎԻԹԽԱՐԻ ՊԼԱՆԻ ՊՐՈՊԱԳԱՆԴՄԱՆԸ

*Ավարտեց իր աշխատանքները Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի պլենումը, որը քննարկեց ընկ. Ն. Ս. Խրուշչովի «Քիմիական արդյունաբերության արագ զարգացումը գյուղատնտեսական արտադրության վերելքի և ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանն է» զեկուցումը։*

*Այդ օրերին ամբողջ աշխարհի հայացքը բևեռված էր Համագումարների պալատին, որտեղ տեղի էր ունենում Կենտկոմի պլենումը։ Յոթ տարի հետո սովետական երկիրը քիմիական արդյունաբերության զարգացման տեսակետից կդառնա աշխարհի առաջին տերությունը։ Քիմիան դառնում է կոմունիստական հասարակության կառուցման ակտիվ ուժ։*

*Կոմունիզմի կառուցման արդի էտապում պարտիայի ու պետության տնտեսական քաղաքականությունը բացում է մեր հասարակության արտադրողական ուժերի հետագա զարգացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և նյութական ռեսուրսների խնայողության վիթխարի հեռանկարներ։*

*Մեր պարտիան, նրա լենինյան Կենտրոնական կո-*

միտեն սովետական ժողովրդին անշեղորեն տանում են
ՍՄԿՊ XXII համագումարի նշած ուղիով. նրա բոլոր
ջանքերը նպատակամղում կոմունիզմի նյութատեխնի-
կական բազայի ստեղծմանը։
Պարտիայի հատուկ հոգատարության առարկան,
նշում է պլենումում իր զեկուցման մեջ ընկեր Ն. Ս.
Խրուշչովը, արտադրության տնտեսական արդյունավե-
տության բարձրացումն է։ Մենք պետք է լայն ասպա-
րեզ տանք տեխնիկայի առավել առաջադիմական ուղ-
ղությունների և ամբողջ ժողովրդական տնտեսության
կարևորագույն ճյուղերի զարգացմանը։ Այսպիսի ճյու-
ղերից մեկն է քիմիական արդյունաբերությունը։

Քիմիական արդյունաբերության արագ զարգացման
ուղղությամբ մշակված միջոցառումների շնորհիվ մեր
երկիրը նոր, խոշոր քայլ է կատարում ամբողջ ժողո-
վրդական տնտեսության և հատկապես կենսականո-
րեն կարևոր այնպիսի ճյուղերի վերելքի ասպարեզում,
ինչպիսիք են գյուղատնտեսությունը և ժողովրդական
սպառման ապրանքների արտադրությունը։

ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի մայիսյան պլենու-
մից հետո մեր երկրում քիմիական արդյունաբերու-
թյան զարգացմանը մեծ ուշադրություն է դարձվում։
Լայն մասշտաբներով ծավալվել է քիմիական ձեռնար-
կությունների շինարարությունը։ Յոթնամյակի հինգ
տարում այդ ճյուղում կապիտալ ներդրումները
կկազմեն 5.3 միլիարդ ռուբլի, որը գրեթե մեկ ու կես
անգամ ավելի է, քան 1958 թվականին նախորդած սո-
վետական իշխանության բոլոր տարիներին ներդրվածը։

Կենտկոմի պլենումը քննարկեց քիմիական արդյու-
նաբերության զարգացման հետևյալ ծրագիրը։ Քիմիա-
կան արդյունաբերության կարևորագույն ճյուղերի հա-
մախառն արտադրանքը 1963 թվականի ութ միլիարդ
ռուբլուց 1965 թվականին հասցնել 10.5 միլիարդ ռուբ-
լու, իսկ 1970 թվականին՝ 24—26 միլիարդ ռուբլու։
Ընդսմին, առաջիկա յոթնամյակում հանքային պարար-
տանյութերի արտադրությունը ավելացվելու է 3,5—4
անգամ (շուրջ 70—80 միլիոն տոննա), բույսերի պաշտ-
պանության ու վնասատուների դեմ պայքարի քիմիա-
կան միջոցների թողարկումը կավելացվի 7.5 անգամ,
պլաստմասսայի ու սինթետիկ ձյութի արտադրությու-



նը՝ 6—6,9 անգամ (շուրջ 3,5—4 միլիոն տոննա), քի-
միական թելերի թողարկումը՝ 4,4 անգամ (շուրջ 1.350
հազար տոննա), ավտոդողերի արտադրությունը՝ երկու
անգամ (շուրջ 44 միլիոն հատ)։

Յոթ տարում պետք է կառուցել մոտավորապես 200
նոր և վերակառուցել ավելի քան 500 գործող ձեռնար-
կություն։ Քիմիական արդյունաբերության զարգացման
և գյուղատնտեսության կոմպլեքսային քիմիացման
կապիտալ ներդրումների ընդհանուր գումարը կկազմի
ավելի քան 42 միլիարդ ռուբլի, այդ թվում միայն գյու-
ղատնտեսության քիմիացման հետ կապված ծախսերը
կհասնեն մոտավորապես 10,5 միլիարդ ռուբլու։

Մեր պարտիան և կառավարությունը սովետական
իշխանության բոլոր տարիների ընթացքում առաջին
անգամ են հնարավորություն ստացել այդպիսի խոշոր
կապիտալ ներդրումներ հատկացնել արտադրության
այն ճյուղերին, որոնք անմիջականորեն կապված են
ժողովրդի պահանջների բավարարման հետ։ Այդ բա-
նում առաջնահերթ տեղ է հատկացվում քիմիային՝ որ-
պես գյուղատնտեսական արտադրության զարգացման
հզոր միջոցի։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը իր զեկուցման մեջ նշում է,
որ հաշվի առնելով պետության բոլոր կարիքների բա-
վարարումը, կպահանջվի արտադրել հետևյալ քանա-
կությամբ պարենամթերք. հացահատիկ՝ 14—16 մի-
լիարդ փութ 1970 թվականին և 18—19 միլիարդ փութ
1980 թվականին, նույն թվականներին միս (սպանդա-
նոցային քաշով)՝ 20—25 միլիոն տոննա և 30—32 մի-
լիոն տոննա, կաթ՝ 115—135 միլիոն տոննա և 170—180
միլիոն տոննա, շաքար՝ 10 միլիոն տոննա և 12 մի-
լիոն տոննա։

Այնուհետև կոնկրետ օրինակներով և թվերով ընկեր
Ն. Ս. Խրուշչովը ցույց է տալիս, որ երկրի հիշյալ ծա-
վալի գյուղատնտեսական մթերքների պահանջների
լրիվ բավարարման միակ խելացի ուղին բերքատվու-
թյան բարձրացումն է։ Ընդսմին, բերքատվության
բարձրացման համար մղվող պայքարում պետք է հմտո-
րեն օգտագործել պարարտանյութերը, հացահատիկա-
յին կուլտուրաների լավագույն սորտերը, գյուղատըն-
տեսական տեխնիկան, հարկավոր է բարձրացնել կոլ-
տնտեսականների և սովխոզների աշխատողների վար-
պետությունը։

Պարտիան և կառավարությունը վերջին տարիներին
զգալի աշխատանք են կատարել հանքային պարարտա-
նյութերի արտադրությունն ավելացնելու համար: Դրա
շնորհիվ հանքային պարարտանյութերի արտադրու-
թյունը 1953 թվականի 7 միլիոն տոննայից ընթացիկ
տարում հասել է 20 միլիոն տոննայի: Դա, անշուշտ,
լավ աճ է: Բայց, այնուհանդերձ, արտադրվող պարար-
տանյութերի քանակը չի համապատասխանում գյու-
ղատնտեսության աճող պահանջներին:

Գյուղատնտեսության տեխնիկական զինվածու-
թյունը ուժեղացնելու իրագործվող միջոցառումների
հետ մեկտեղ հանքային պարարտանյութերի արտա-
դրությունը գյուղատնտեսության հետագա վերելքի
վճռական հիմքն է: Քիմիա և մեքենայացում ահա այն,
ինչը այսօր պետք է պարտիայի, կառավարության,
ամբողջ ժողովրդի հատուկ հոգատարության առարկան
լինի գյուղատնտեսության ասպարեզում:

Պարարտանյութերի հետ նույն շարքում պետք է
դասել հերբիցիդների և թունաքիմիկատների արտա-
դրությունը: Գյուղատնտեսությանը հսկայական վնաս
են պատճառում մոլախոտերը, ինչպես նաև բույսերի
զանազան վնասատուներն ու հիվանդությունները: Դր-
րանք բերքի կորուստները շատ դեպքերում հասցնում
են 20 տոկոսի:

Քիմիան անսահման հնարավորություններ է բա-
ցում ժողովրդական սպառման չափազանց լայն ու
բազմազան ասորտիմենտի բարձրորակ ապրանքներ
արտադրելու համար: Պատկերավոր ասած՝ քիմիան
կարող է ոչ միայն կերակրել, այլև հագցնել մարդուն,
կենցաղում մտցնել բազմաթիվ հարմար, էժան տնա-
յին առարկաներ:

Թեթև արդյունաբերության համապատասխան ճյու-
ղերի զարգացումը արագացնելու համար նախատես-
վում է 1970 թվականին քիմիական թելերի թողարկումը
հասցնել մոտավորապես մեկ միլիոն 350 հազար տոն-
նայի: Արտադրության այդպիսի ծավալը հնարավորու-
թյուն կտա մեծ չափով ավելացնելու գործվածքեղենի
տրիկոտաժեղենի և լայն սպառման այլ ապրանքների
թողարկումը:

Արտադրության հիշյալ ծավալը հնարավորություն
կընձեռի 1970 թվականին գործվածքեղենի արտադրու-
թյամբ մոտենալ ԱՄՆ-ի այժմյան մակարդակին, իսկ



տրիկոտաժեղենի և գուլպեղենի արտադրությամբ՝ զգալիորեն առաջ անցնել նրանից:

Նախատեսվում է զգալիորեն արագացնել արհեստական կաշվի և թաղանթանյութերի արտադրության զարգացումը: Ժողովրդական տնտեսության մեջ այդ նյութերի լայն կիրառումը իրագործվում է ոչ միայն բնական հումքի պակասի պատճառով, այլև այն պատճառով, որ մի շարք դեպքերում արհեստական նյութերի որակը և խնայողականությունը ավելի բարձր է:

Քիմիական արդյունաբերության այն ճյուղերի զարգացումը, որոնք կապված են ժողովրդական սպառման ապրանքների արտադրության հետ, երկրի էկոնոմիկայի հետագա վերելքի կարևոր խնդիրներից մեկն է: Ավելի ու ավելի շատ այդպիսի առարկաներ արտադրելու հետ, երկիրը հնարավորություն կստանա զգալիորեն իջեցնելու ժողովրդական սպառման ապրանքների գները:

Քիմիական մեթոդների արմատավորումը լրջորեն կվերափոխի ծանր ինդուստրիայի ու շինարարության շատ ճյուղերի տեխնոլոգիան: Մեր երկրում ժամանակակից պոլիմերային նյութերը արտադրվել և կիրառվել սկսեցին համեմատաբար վերջերս: Պահանջվեցին որոշակի ժամանակամիջոց, գիտնականների, բանվորների, ինժեներների ու տեխնիկների մեծ ջանքեր պլաստմասսայի հատկությունները ուսումնասիրելու, արտադրությունը կազմակերպելու համար:

Պլենումը մեծ ուշադրություն դարձրեց ծանր ինդուստրիայի ու շինարարության մեջ քիմիայի նվաճումների արմատավորման հարցերին: Հետագա ինդուստրացումը, նշեց Ն. Ս. Խրուշչովը, շինարարության ժամկետների կրճատումը և ինքնարժեքի իջեցումը զգալի չափով կախված կլինեն նրանից, թե քիմիայի արտադրանքը ինչ տեղ կգրավի շինարարության և հատկապես շինանյութերի արդյունաբերության մեջ:

Այնուհետև ընկ. Ն. Ս. Խրուշչովը ասում է, որ անհրաժեշտ է շեշտակի վերելքի հասցնել քիմիական մեքենաշինությունը, ավելի լավ կազմակերպել շինարարությունը և վերակառուցել քիմիական ձեռնարկությունները, բարձրացնել գիտահետազոտական աշխատանքի արդյունավետությունը:

Քիմիայի զարգացման նախատեսվող ծրագրի հաջող կենսագործումը մեր երկրին տալիս է վիթխարի

տնտեսական արդյունք։ Եթե հանրագումարի բերենք այն ամենը, ինչ մենք կստանանք այդ պլանի կենսագործումից, ապա դա կարտահայտվի միլիարդների հասնող վիթխարի գումարներով։

Ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում քիմիական նյութերի կիրառման շնորհիվ, միայն արտադրանքի ինքնարժեքի իջեցումից, 1964 թվականից մինչև 1970 թվականը կստացվի 32 միլիարդ 700 միլիոն ռուբլի խնայողություն։ Իսկ արդյունաբերության ու գյուղատնտեսության քիմիացման միջոցառումների կենսագործման շնորհիվ ստացվող զուտ եկամուտը 1964—1970 թվականներին կկազմի գրեթե 57 միլիարդ ռուբլի, մինչդեռ այդ ժամանակամիջոցում կապիտալ ներդրումները կազմելու են 42 միլիարդ ռուբլի։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը հատակորեն նշեց, որ քիմիայի արագ զարգացման համար մղվող պայքարը պետք է դառնա համաժողովրդական կարևորագույն գործ։ Մեծ քիմիայի համար արշավի պետք է ելնեն բոլոր սովետական մարդիկ։ Հարկավոր է քիմիական գիտելիքներով զինել մասսաներին։ Կարևոր է այնպես անել, որ քիմիայի հրաշալիքներին տիրապետեն դաշտերի աշխատավորները, անասնապահության, թեթև արդյունաբերության աշխատողները, արդյունաբերույան ու շինարարության ինժեներները, տեխնիկները և բանվորները, պետք է նրանց շահագրգռել ուսումնասիրելու քիմիան։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումները աշխատավորների լայն շրջաններում պրոպագանդելու, այն մասսաների սեփականությունը դարձնելու պատվավոր ու պատասխանատու գործում մեծ անելիքներ ունեն նաև ագիտկոլեկտիվները, բոլոր ագիտատորները։

Ագիտատորները պետք է իրենց ամենօրյա բեղուն
աշխատանքով կազմակերպեն արդյունաբերության ու
գյուղատնտեսության բոլոր աշխատավորների սոցիա-
լիստական մրցությունը հանուն մեր մեծ հայրենիքի
հզորության, պարտիայի Կենտկոմի պլենումի որո-
շումները մինչև վերջ պատվով կենսագործելու համար։

# ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ՄԵԶ ՄՈՏ ԵՎ ԿԱՊԻՏԱԼԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Սովետական Միությունում հասարակական, տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում հաստատված է բոլոր ազգերի և բոլոր մարդկանց իսկական իրավահավասարություն, որը բխում է սոցիալիստական հասարակության տնտեսական կարգի բուն էությունից։

Սովետական իշխանությունը իր ամբողջ գործունեությունը ուղղել է կոմունիստական հասարակության կառուցման, ժողովրդի բարօրության նպատակին, որի համար էլ նա վայելում է ժողովրդական մասսաների լիակատար սերն ու վստահությունը։

Սովետական պետությունը մեր երկրի բոլոր քաղաքացիների համար ապահովել է այնպիսի իրավունքներ, որոնք չունեն և չեն կարող ունենալ կապիտալիստական երկրների աշխատավորները, որովհետև մեր երկրում ամբողջ իշխանությունը պատկանում է աշխատավորներին՝ ի դեմս նրանց դեպուտատների սովետների։ Սովետները մեր պետության քաղաքական հիմքն են, այդ պետական իշխանության իսկական ժողովրդական, իսկական դեմոկրատական իշխանության բարձրագույն ձևը։

Վ. Ի. Լենինը սովետական իշխանության հաստատումից կարճ ժամանակ հետո գրել է. «Ընկե՛ր աշխատավորներ։ Հիշեցեք, որ այժմ դուք ինքներդ եք կառավարում պետությունը... Ձեր սովետներն այսուհետև պետական իշխանության օրգաններն են, լիազոր, վճռող օրգաններ» (Երկեր, հատ. 26, էջ 359—360, 1951 թ.)։

Մեզ մոտ աշխատավորների դեպուտատների սովետները, քաղաքների և գյուղերի տեղական սովետներից մինչև ՍՍՌՄ Գերագույն սովետը, իրականացնում են ողջ պետական իշխանությունը ՍՍՌՄ ամբողջ տերիտորիայում։ Սովետները մեկ պետության մեջ են միավորում մեր երկրի ամբողջ բնակչությանը, բոլոր ազգերին ու ժողովուրդներին և դրանով իսկ հնարավորություն ստեղծում հաջողությամբ լուծելու Սովետական Միության ժողովուրդների ընդհանուր խնդիրները։

Իսկական դեմոկրատիան կիրառվում է մեր երկրում։ Այն նախ և առաջ արտահայտվում է մեր ընտրական սիստեմի մեջ։ Աշխատավորական բոլոր խավերի կողմից ընտրված Սովետները ապահովում են միլիոնավոր աշխատավորների ակտիվ մասնակցությունը երկրի ղեկավարման գործին։ Որպեսզի համոզված լինենք այն բանում, որ մեր պետությունը իրոք լիակատար դեմոկրատական հիմունքներով է ղեկավարվում, բավական է հիշատակել, որ մեր երկրի կառավարման ներկայացուցչական սիստեմը բաղկացած է ՍՍՌՄ Գերագույն սովետից, 15 միութենական, 20 ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն սովետներից և մի քանի տասնյակ հազար տեղական սովետներից։

Այլ է պատկերը կապիտալիստական երկրներում։ Նախ, բուրժուական պառլամենտների ընտրություններին բոլոր աշխատավորների մասնակցությունը սահմանափակելու նկատառումով բազմաթիվ խոչընդոտներ են ստեղծվում։ ԱՄՆ-ում, օրինակ, խիստ սահմանափակված են նեգրերի ընտրական իրավունքները։ 18 միլիոնանոց նեգր ժողովուրդը փաստորեն զրկված և հեռացված է պետական իշխանությանը մասնակցելուց։ Բուրժուական պարտիաների պարագլուխները ոչ մի բանի առաջ կանգ չեն առնում, որպեսզի ընտրողների ձայների մեծամասնություն ստանան կապիտալիստները, լայնորեն կիրառվում է ընտրողներին բազմաթիվ կեղծ խոստումներով կաշառելը։

Պետության կառավարման ժամանակաշրջանում բուրժուական իշխանության օրգանները հաշիվ չեն տալիս ընտրողների առջև, այդ պատճառով էլ բուրժուական պարտիաների ներկայացուցիչ դեպուտատները պառլամենտներում հանդես են գալիս միմիայն որպես բուրժուազիայի կամակատարներ։ Բուրժուական գաղափարախոսները, կապիտալիզմի ջատագովները ամեն կերպ գովաբանում են բուրժուական դեմոկրատիան, կապիտալիստական կարգերը և վատաբանում սովետական դեմոկրատիան, սոցիալիզմի կարգերը։

Այժմ տեսնենք, թե բուրժուական ո՞ր դեմոկրատական սկզբունքների մասին են շաղակրատում նրանք։ Նրանք հայտարարում են, թե իբր բուրժուական երկրներում գոյություն ունի հավասարություն։ Բայց մի՞թե մարդիկ կարող են հավատալ դրան։ Ի՞նչ հավասարություն կարող է գոյություն ունենալ կապիտալիստի և



բանվորի միջև, կալվածատիրոջ ու չքավոր գյուղացու միջև, շահագործողի և շահագործվողի միջև։

Նրանք պնդում են, թե այնտեղ գոյություն ունի այսպես ասած, մամուլի ազատություն։ Բայց բանվորի և գյուղացու համար մամուլի ի՞նչ ազատության մասին կարող է խոսք լինել, երբ բոլոր միջոցները (շենքերը, տպարանները, թուղթը, թերթերը, ամսագրերը, հրատարակչությունները) պատկանում են կապիտալիստներին։ Այդպիսի պայմաններում բնական է, որ աշխատավորների առջև փակվում են մամուլի բոլոր դռները՝ իրենց հուզող հարցերով հանդես գալու համար։

Բուրժուական շատ պետություններ հռչակում են քաղաքացիների զանազան իրավունքներ, բայց երբ բանը հասնում է գործնականին, ապա պարզվում է, որ կապիտալիզմի երկրների աշխատավորները չեն կարողանում օգտագործել այդ իրավունքները։

Բուրժուական երկրները բանվորի համար չեն երաշխավորում աշխատանք ստանալու իրավունքը։ Այնտեղ գոյություն ունի մշտական մասսայական գործազրկություն, որը ձեռնտու է կապիտալիստների համար, որովհետև այն նրանց հնարավորություն է տալիս իջեցնելու աշխատավորների աշխատավարձը և մեծացնելու իրենց շահույթները։

Բուրժուական շատ երկրներում բանվորը աշխատունակությունը կորցնելու դեպքում անմիջապես հեռացվում է աշխատանքից, երբ նա ծերանում է, նրան դուրս են շպրտում գործարանից՝ առանց որևէ նյութական ապահովման։ Ամերիկյան շատ գործարանների դարպասների վրա կարելի է կարդալ «քառասուն տարեկանից բարձր անձանց աշխատանքի չենք ընդունում» հայտարարությունը։ Իսկ բնակչության բուժսպասարկումը կատարվում է վճարովի։

Բուրժուական ոչ մի երկրում չկա կանանց լիակատար հավասարություն տղամարդկանց հետ։ Այնտեղ կնոջ համար շատ դժվար է քաղաքական և կուլտուրական գործունեության ասպարեզ մտնելը։ ԱՄՆ-ում և Անգլիայում միևնույն աշխատանքի համար կինը գրեթե 50—60 տոկոսով ավելի ցածր է վարձատրվում, քան տղամարդը։ Ամերիկյան «Դեյլի պիպլս ուորլդ» թերթը գրում է. «Եթե հանկարծակի ԱՄՆ-ի բոլոր կանայք դառնան տղամարդ, ապա ձեռնարկատերերը պետք է

աշխատավարձ վճարեն 10 միլիարդ դոլար ավելի, քան վճարում են այժմ»։

Բոլորովին այլ է պատկերը մեզ մոտ։ Մեր երկրում ոչ միայն հռչակվում է աշխատավորների ամենադեմոկրատական իրավունքները, այլ, որ ամենակարևորն է՝ երաշխավորվում, օրենքով ապահովվում է դրանց իրագործումը։ Օրինակ, ըստ սովետական օրենքի, մեր երկրի բոլոր քաղաքացիներն ունեն աշխատանքի իրավունք, որը ոչ միայն հռչակվում է, այլև գործնականում իրոք, ամեն մի քաղաքացու ապահովում է աշխատանքով։ Դա սովետական մարդկանց մեծ նվաճումն է, որի մասին կապիտալիստական երկրների աշխատավորները միայն երազել կարող են։ Մեզ մոտ աշխատավորներն ունեն հանգստի իրավունք, նրանց համար սահմանված է 6—7 ժամյա աշխատանքային օր, ամեն տարի տրվող արձակուրդ՝ աշխատավարձի պահպանումով։ Աշխատավորների տրամադրության տակ են գտնվում հազարավոր հանգստյան տներ, առողջարաններ, զբոսայգիներ, թատրոններ և արվեստի ու կուլտուրայի բազմաթիվ այլ օջախներ։

Սովետական պետությունը բոլոր աշխատողներին ծերության հասակում, հիվանդության և աշխատունակությունը կորցնելու դեպքում տալիս է նյութական ապահովության իրավունք։ Բոլոր քաղաքացիները մեզ մոտ ունեն անվճար կրթության և բժշկական օգնություն ստանալու իրավունք։

Մեզ մոտ կինը օգտվում է տղամարդուն հավասար լիակատար իրավունքներով։ Նա պետական, տնտեսական, կուլտուրական և հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում ակտիվորեն մասնակցում է երկրի կառավարմանը։

Սովետական Միությունում կիրառվող իսկական դեմոկրատիայի շնորհիվ. վաղուց ի վեր վերացվել է ազգային խտրականությունը։ ՍՍՌՄ բոլոր քաղաքացիները, անկախ ազգային պատկանելիությունից իրավահավասար են։ Իրավունքների ամեն մի սահմանափակում, կամ ատելության ու արհամարհանքի ամեն տեսակ քարոզ մեզ մոտ պատժվում է օրենքով։ Իսկ բուրժուական պետությունները բացահայտորեն ռասսայական և ազգային ատելություն են քարոզում։ Նրանք մի ժողովրդի հրահրում են մյուսի դեմ, որոշ ազգեր առավելություններ են վայելում, իսկ



մյուս ազգությունների իրավունքները ոտնահարվում են։ Անհավոր կեղեքման են ենթարկվում այն գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդները, որոնք դեռ չեն ազատագրվել կապիտալիզմի ծանր լծից։

Ամերիկայի Միացյալ Նահանգներում, ամենաբարձր զարգացած կապիտալիստական այդ երկրում, գնալով ավելի ու ավելի են ծավալվում բիզնեսմենների և գանգստերների կամայականությունները։ Պետության կառավարման ասպարեզում գոյություն ունեցող անարխիան մեծ վրհողություններ է պատճառում այդ երկրի աշխատավոր ժողովրդին։

ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Քեննեդիի սպանությունից հետո, նոր պրեզիդենտը՝ Լինդոն Ջոնսոնը իր ծրագրային ելույթում ասաց, թե իր կառավարությունը «կշարունակի պայքարել... բուն ԱՄՆ-ում եղած աղքատության ու տառապանքների, տգիտության ու հիվանդությունների դեմ»։ «Մենք,— ասաց նա,— մեր երկրում բավականին երկար ժամանակ ենք խոսել հավասար իրավունքների մասին։ Մենք այդ մասին խոսել ենք հարյուր տարի շարունակ կամ ավելի։ Այո, այժմ եկել է հաջորդ գլուխը գրելու, և դա օրենքների ժողովածուի մեջ մտցնելու ժամանակը»։ Նա կոչ է անում ընդունելու քաղաքացիական իրավունքների օրենքը, որպեսզի կարողանան առաջ ընթանալ խտրականության ու կեղեքման հետքերը ԱՄՆ-ում վերացնելու գործում, որոնք հիմնված են մաշկի գույնի ու ռասսայի տարբերության վրա։

Հետաքրքիր է նաև վկայակոչել Տեխասի նահանգապետ Ջոն Կոնելիի հայտարարությունը «...ես կարծում եմ,— ասել է նահանգապետը,— որ պրեզիդենտ Քեննեդին վիճակվեց իր մահով անել այն, ինչ չէր արվել կենդանության օրոք. այնպես ցնցել ու շշմեցնել մեր երկիրն ու ամբողջ աշխարհը, որ նրանք հասկանան, թե ատելության ու անհանդուրժողության ինչպիսի չարաբակ խոցով ենք բռնված մենք բոլորս»։ Իրենց իսկ, կապիտալի երկրի տերերի խոստովանություններից հետո ոչինչ չի մնում ասելու, թե որտե՞ղ է իսկական դեմոկրատիան, կապիտալի՞ երկրներում, թե՞ մեզ մոտ, ժողովրդի իշխանության երկրում։

Ա. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

# ՄԵՐ ԵՐԿԻՐԸ ՎՍՏԱՀՈՐԵՆ ԸՆԹԱՆՈՒՄ Է ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՈՒՂԻՈՎ

Օրերս իր աշխատանքները ավարտեց ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի երրորդ սեսիան։ Սեսիան հաստատեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1964—1965 թվականների պետական պլանը և ՍՍՌՄ 1964—1965 թվականների պետական բյուջեն։

Սովետական բոլոր մարդիկ իրենց անձնվեր աշխատանքով կապահովեն 1964—1965 թվականների պլանի հաջող կատարումն ու գերակատարումը, որը մեծ ավանդ կլինի մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում։

Ընկեր ագիտատո՛ր. 1964—1965 թվականների պետական պլանի մասին զրույցը նախապատրաստելիս օգտագործիր ստորև հրապարակվող թվերն ու փաստերը։

□ **1964—1965** *ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ արդյունաբերական արտադրանքի թողարկումը կաճի 17,5 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում քիմիական արդյունաբերության արտադրանքը կավելանա 36 տոկոսով, նավթավերամշակմանը՝ 29 տոկոսով, քիմիական և նավթային սարքավորման արտադրությունը՝ մեկ և կես անգամ։*

□ *1964 ԹՎԱԿԱՆԻՆ հանքային պարարտանյութերի արտադրությունը կկազմի 25,5 միլիոն տոննա, իսկ 1965 թվականին՝ 35 միլիոն տոննա, այսինքն երկու տարվա ընթացքում կավելանա 75 տոկոսով։*

□ *ԲՈՒՅՍԵՐԻ պաշտպանության քիմիական միջոցների արտադրությունը, 1963 թվականի համեմատությամբ, կաճի երկու անգամ։ Կյուրացվի բույսերի պաշտպանության 23 նոր, ավելի արդյունավետ քիմիական պրեպարատների թողարկումը։*

□ *ՔԻՄԻԱԿԱՆ թելի թողարկումը երկու տարում կավելանա 44 տոկոսով, իսկ առավել արժեքավոր սինթետիկ թելերի՝ լավսանի, կապրոնի և մյուսների թողարկումը կաճի գրեթե երկու անգամ։*

□ *ԵՐԿՈՒ տարում կգործարկվեն 82 քիմիական ձեռնարկություններ ու արտադրություններ, կսկսվի 37 նոր գործարանների շինարարությունը։*



□ *ՔԻՄԻԱԿԱՆ արդյունաբերության զարգացման համար 1964 թվականին հատկացվում են երկու միլիարդ 92 միլիոն ռուբլու, իսկ 1965 թվականին՝ երկու միլիարդ 757 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ՝ 1963 թվականի մեկ միլիարդ 450 միլիոն ռուբլու դիմաց։*

□ *ՆԱՎԹԻ հանույթը 1964 թվականին կհասնի 222 միլիոն տոննայի և 1965 թվականին՝ 240 միլիոն տոննայի, 1963 թվականին արտադրված 205 միլիոն տոննայի դիմաց։*

□ *ԳԱԶԻ հանույթն ու արտադրությունը 1965 թվականին, 1963 թվականի համեմատությամբ, կավելանա 40 տոկոսով։*

□ *ՆԱԽԱՏԵՍՎՈՒՄ Է ածխի հանույթը 1964 թվականին հասցնել 537 միլիոն տոննայի և 1965 թվականին՝ 553 միլիոն տոննայի։*

□ **1964—1965** *թվականներին նոր, խոշոր քայլ կկատարվի երկրի էլեկտրիֆիկացման գործում։ 1965 թվականին էլեկտրաէներգիայի արտադրությունը կհասնի 508 միլիարդ կիլովատ-ժամի, որը համապատասխանում է յոթնամյա պլանին։*

□ **1965** *թվականին չուգունի ձուլումը կհասնի 65,7 միլիոն տոննայի, պողպատինը՝ 89,3 միլիոն տոննայի, գլանվածքի արտադրությունը՝ 69 միլիոն տոննայի, որը համապատասխանում է յոթնամյա պլանի առաջադրանքներին։*

□ *ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ և մետաղամշակման արտադրանքի ծավալը երկու տարում կավելանա 21 տոկոսով, իսկ ընդհանուր առմամբ յոթնամյակի ընթացքում՝ մոտավորապես 2,4 անգամ։*

□ *ԵՐԿՈՒ տարում մեր արդյունաբերությունը կպատրաստի ավելի քան 700 հազար տրակտոր, դրանցից ավելի քան 540 հազարը՝ գյուղատնտեսության համար։*

□ *ՑԵԼՅՈՒԼՈԶԻ արտադրությունը երկու տարում կավելանա 34 տոկոսով, թղթինը և ստվարաթղթինը՝ 30 տոկոսով։*

□ *ԵՐԿՈՒ տարում գործվածքների թողարկումը կավելանա գրեթե 600 միլիոն մետրով, տրիկոտաժեղենի թողարկումը կաճի գրեթե 33 տոկոսով, բրդե և կիսաբուրդ տրիկոտաժե վերնազգեստինը՝ 50 տոկոսով։*

□ **1965** *թվականին կաշվե կոշիկի արտադրությունը կհասնի 470 միլիոն զույգի։*

□ *ԹԵԹԵՎ, սննդի և ձկան արդյունաբերության կապիտալ ներդրումների ծավալը 1964—1965 թվականներին կկազմի 3 միլիարդ 335 միլիոն ռուբլի, կամ նախորդ երկու տարվա համեմատությամբ կավելանա 53 տոկոսով։*

☐ **1964** թվականին գյուղատնտեսությունը կստանա 22 միլիոն տոննա, իսկ 1965 թվականին՝ ավելի քան 30 միլիոն տոննա հանքային պարարտանյութ։

☐ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ զարգացման կապիտալ ներդրումները երկու տարում կկազմեն 11,5 միլիարդ ռուբլի, իսկ յոթնամյակի անցած չորս տարում ներդրվել է 10 միլիարդ ռուբլի։

☐ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ մեջ աշխատանքի արտադրողականությունը 1964 թվականին պետք է բարձրանա 4,6 տոկոսով և 1965 թվականին՝ 6,8 տոկոսով, որը ապահովում է արդյունաբերական արտադրանքի պլանավորված ամբողջ աճի ավելի քան 70 տոկոսը։

☐ ԵՐԿՈՒ տարում Սովետական Միության ազգային եկամուտը կաճի 16 տոկոսով։

☐ **1965** թվականին, 1963 թվականի համեմատությամբ, բանվորների ու ծառայողների թիվը կավելանա գրեթե 5,5 միլիոնով և կկազմի 76,1 միլիոն մարդ։

☐ ԱՇԽԱՏԱՎԱՐՁԻ ֆոնդը երկու տարում կմեծանա ավելի քան 12 տոկոսով և ավելի բարձր կլինի, քան նախանշվում էր յոթնամյակի համար։

☐ ՆԱԽԱՏԵՍՎԱԾ են միջոցներ ցածր վարձատրվող աշխատողների աշխատավարձի նվազագույնը ամսական 40—45 ռուբլու հասցնելու համար, ինչպես նաև լուսավորության, առողջապահության, կուլտուրայի, բնակարանային-կոմունալ տնտեսության և բնակչության սպասարկման հետ կապված մյուս ճյուղերի բոլոր աշխատավորների աշխատավարձի համապատասխան կարգավորումը։

☐ ԿԲԱՐՁՐԱՑՎԵՆ հաշմանդամության կենսաթոշակների նվազագույն չափերը։

☐ **1964—1965** թվականներին պետական բյուջեի, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և արհմիությունների միջոցների հաշվին բնակչությանը ձրիաբար տրամադրվող բարիքների գումարը կաճի ավելի քան 5 միլիարդ ռուբլով և 1965 թվականին կկազմի մոտ 40 միլիարդ ռուբլի։

☐ ԵՐԿՈՒ ՏԱՐՈՒՄ շահագործման կհանձնվեն 155 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Դա նշանակում է, որ նոր, բարեկարգ բնակարաններ կստանան ևս 15 միլիոն մարդ։

☐ ՆԱԽԱՆՇՎԱԾ է երկու տարում պատրաստել բարձրագույն կրթությամբ 760 հազար մասնագետ և միջնակարգ կրթությամբ 1.200 հազար մասնագետ։



☐ **1963** թվականին ՍՍՌՄ-ի արդյունաբերական արտադրանքի ամբողջ ծավալը կազմում էր ամերիկյան արտադրանքի միայն մեկ երրորդը, յոթնամյակի սկզբին՝ մոտավորապես կեսը, իսկ այս տարի մենք կարտադրենք ԱՄՆ-ի արտադրանքի ներկա ծավալի շուրջ 65 տոկոսը։

☐ **1965** թվականին մենք կունենանք արդյունաբերական արտադրության մոտավորապես նույնպիսի ծավալ, որպիսին ԱՄՆ-ը ուներ 1958 թվականին, կամ նրա ժամանակակից մակարդակի երեք քառորդը։

☐ ՍՍՌՄ ՊԵՏԱԿԱՆ բյուջեի եկամուտները 1964 թվականին կկազմեն 91,9 միլիարդ ռուբլի և ծախսերը՝ 91,3 միլիարդ ռուբլի, 1965 թվականին եկամուտները՝ 101,2 միլիարդ ռուբլի և ծախսերը 100,4 միլիարդ ռուբլի։

☐ **1964** թվականին ժողովրդական տնտեսությանը կհատկացվի 38,7 միլիարդ ռուբլի կամ 4 տոկոսով ավելի, քան 1963 թվականին։

☐ ՀԱՇՎԻ ԱՌՆԵԼՈՎ ձեռնարկությունների և կազմակերպությունների սեփական ռեսուրսները՝ ժողովրդական տնտեսությանը հատկացվող ծախսերի ընդհանուր գումարը 1964 թվականին կկազմի 68,5 միլիարդ ռուբլի, իսկ 1965 թվականին՝ 74,4 միլիարդ ռուբլի։

☐ **1964—1965** թվականների բյուջեով քիմիական գիտության զարգացման համար նախատեսվում է 686 միլիոն ռուբլի։

☐ **1964** թվականին գյուղատնտեսության զարգացման համար կհատկացվի 11,9 միլիարդ ռուբլի, իսկ 1965 թվականին՝ 12,8 միլիարդ ռուբլի։

☐ ՍՈՎԽՈԶՆԵՐԻ և կոլտնտեսությունների մեխանիզատորների որակյալ կադրեր պատրաստելու համար առաջիկա երկու տարում հատկացվում է 541 միլիոն ռուբլի։ Այդ միջոցներով կորակավորվի ավելի քան 700 հազար մարդ։

☐ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ առողջապահության համար 1964 թվականին հատկացվում է 5,4 միլիարդ ռուբլի, իսկ 1965 թվականին՝ 5,7 միլիարդ ռուբլի։ 1963 թվականին հատկացված էր 5,3 միլիարդ ռուբլի։

☐ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ կրթության, գիտության և կուլտուրայի զարգացման համար 1964 թվականին հատկացվում է 14,6 միլիարդ ռուբլի, 1965 թվականին՝ 15,4 միլիարդ ռուբլի։ 1963 թվականին հատկացված էր 13,8 միլիարդ ռուբլի։

☐ ՊԵՏԱԿԱՆ սոցիալական ապահովագրության և ապահովության համար՝ 1964 թվականին հատկացվում է 12,7 միլիարդ ռուբ-

ի, իսկ 1965 թվականին՝ 13,4 միլիարդ ռուբլի։ 1963 թվականին հատկացված էր 12,5 միլիարդ ռուբլի։

□ 1965 թվականին մանկապարտեզներում ու մանկամսուրներում դաստիարակվելու է 7,5 միլիոն երեխա։ Այդ հիմնարկների պահպանության համար 1964 թվականին հատկացված է 1,7 միլիարդ ռուբլի, իսկ 1965 թվականին՝ 1,9 միլիարդ ռուբլի։

□ 1964—1965 թվականների բյուջեով բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների պահպանության համար նախատեսված է գրեթե 4 միլիարդ ռուբլի։

□ ԱՌԱՋԻԿԱ երկու տարում բնակարանային շինարարության ֆինանսավորման համար նախատեսված է 8,8 միլիարդ ռուբլի։

Պարտիան մեզ կոչ է անում աշխատել եռանդով, ոգևորված, հանուն մեծ նպատակի՝ կոմունիզմի։ Որքան շատ լինեն հաջողությունները աշխատանքում, այնքան գեղեցիկ ու հարուստ կլինի սովետական մարդկանց կյանքը, այնքան շուտ կկառուցվի լուսավոր ապագայի մեծագույն շենքը։

Հարգելի ընկե՛ր։ Բարձրացրու աշխատանքի արտադրողականությունը, իջեցրո՛ւ արտադրանքի ինքնարժեքը, պայքարի՛ր քո ձեռնարկությունում հանուն տեխնիկական պրոգրեսի։ Այդ էլ կլինի քո՛ ավանդը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։





# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Մինչև վերջ կենսագործենք ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումները

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Քիմիական արդյունաբերության արագ զարգացումը գյուղատնտեսության արտադրության վերելքի և ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանն է. *զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1963 թվականի դեկտեմբերի 9-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 10-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Եզրափակման խոսք ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում 1963 թվականի դեկտեմբերի 13-ին. *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 15-ի համարում։*

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, *ինֆորմացիոն հաղորդագրություն ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի աշխատանքների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 9—17-ի համարներում։*

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 17-ի համարում։*

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ— Ճառ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 14-ի համարում։*

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ— Առաջ ընթանալ, օգտագործելով ռեզերվները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի նոյեմբերի 29-ի համարում։*

Նոր բնագծեր նվաճենք մեծ քիմիայի ճանապարհին. *«Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 8-ի առաջնորդողը։*

## 2. Ամեն ինչ ետ մնացող կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան բարձրացնելու համար

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Եզրափակման խոսք ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում 1963 թվականի դեկտեմբերի 13-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 15-ի համարում։*

Ա. ՔՈՉԻՆՅԱՆ— Ռեսպուբլիկայի ետ մնացող կոլտնտեսություն-

ների և սովխոզների էկոնոմիկան բարձրացնելու միջոցառումների մասին, զեկուցում ՀԿԿ Կենտկոմի պլենումում 1963 թվականի նոյեմբերի 27-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի նոյեմբերի 30-ի համարում։

ՀԿԿ Կենտկոմի պլենումը, ինֆորմացիոն հաղորդագրություն ՀԿԿ Կենտկոմի պլենումի աշխատանքների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի նոյեմբերի 30-ի համարում։

Երկու տարում հաղթահարենք տնտեսապես թույլ կոլտնտեսությունների ետ մնալը, Վիննիցայի մարզի Խմելնիցկու կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչության կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, մասնագետների և բոլոր աշխատողների նամակը գյուղատնտեսության բոլոր աշխատավորներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 12-ի համարում։

Բարձրացնել ետ մնացող տնտեսությունների էկոնոմիկան. «Ս. Հ.»-ի 1963 թվականի նոյեմբերի 27-ի առաջնորդողը։

### 3. Աճում ու ամրապնդվում է սովետական ռեսպուբլիկաների անխախտ միասնությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ազգությունների կամ «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջը, *Երկեր, հատ. 36, էջ 699—707, Հայպետհրատ, 1958։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ազգերի մերձեցումը և ժողովուրդների բարեկամության ամրապնդումը, *ՍՄԿԿ ծրագրի մասին պարտիայի XXII համագումարում տված զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

Պարտիայի խնդիրները ազգային հարաբերությունների բնագավառում, *ՍՄԿԿ ծրագիրը, Հայպետհրատ, 1961։*

Ն. Վ. ՊՈԴԳՈՐՆԻ— Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 46-րդ տարեդարձը, *զեկուցում Կրեմլի համագումարների պալատում կայացած հանդիսավոր նիստում 1963 թվականի նոյեմբերի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

### 4. Կոմունիզմի հաստատաքայլ երթը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Պ. Ֆ. ԼՈՄԱԿՈ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1964—1965 թվականների պետական պլանի մասին, *զեկուցում ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի երրորդ սեսիայում 1963 թվականի դեկտեմբերի 16-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 17-ի համարում։*

Վ. Ֆ. ԳԱՐԲՈՒԶՈՎ— ՍՍՌՄ 1964—1965 թվականների պետական բյուջեի մասին և ՍՍՌՄ 1962 թվականի պետական բյուջեի կատարման մասին, *զեկուցում ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի երրորդ սեսիայում 1963 թվականի դեկտեմբերի 16-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի դեկտեմբերի 17-ի համարում։*

---



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀՈՒՄՈՐ

*Զանգը տվեց։ Դասից ուսուցչանոց մտավ Մարիա Իվանովնան, որը առաջին տարին էր աշխատում դպրոցում։ Մանր շունչ քաշելով, նա տրտնջաց.*

*— Ահա թե ինչպիսի աշակերտներ ունեմ. մեկ անգամ բացատրեցի նյութը՝ չհասկացան։ Երկրորդ անգամն եմ բացատրում՝ չեն հասկանում։ Երրորդ անգամն եմ բացատրում, վերջապես ես ինքս հասկացա, սակայն, նրանք այդպես էլ չհասկացան։*

* * *

*— Ո՞վ է ձեր դասարանում ամենից լավ խնդիր լուծողը։*

*— Վանյան, սակայն ես նրան օգնում եմ։*

* * *

*— Բա՞րի է ձեր դասղեկը։*

*— Ոչ մի վատ բան չես կարող ասել։ Իսկ եթե ասես— անմիջապես ծնողի հետևից կուղարկի։*

* * *

*Ուսուցիչը հարցնում է աշակերտին։*

*— Որքան կանի հինգին գումարած մեկ։*

*Աշակերտը չի կարողանում պատասխանել։ Ուսուցիչը որոշում է օգնել։*

*— Դե լավ, պատկերացրու, որ ես քեզ տվեցի հինգ ճագար, իսկ հետո դարձյալ մեկը։ Քանի ճագար եղավ։*

*— Յոթը։*

*— Ինչո՞ւ։*

*— Որովհետև տանը ես մեկն ունեմ։*

### ԵԼՔԸ ԳՏԱՎ

*Եղավ ժամանակ, որ Լյուդովիկոս XIV ոտանավորներ գրեց և առաջարկեց նշանավոր քննադատ Բուալոյին իր գնահատականը տալ։*

*Բուալոն բացառիկ ուշադրությամբ կարդաց այդ ոտանավորները, և մտածելուց հետո թագավորին ասաց.*

*— Ես, ձերդ գերազանցություն, ավելորդ անգամ ցնցված եմ ձեր ամենակարողությամբ, դուք ցանկացել եք վատ ոտանավորներ գրել— և ձեզ այդ լիովին հաջողվել է։*

---

# Ց Ա Ն Կ

# 1963 ԹՎԱԿԱՆԻՆ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՆՅՈՒԹԵՐԻ

## ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ



## ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



## ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ







ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ



ԱՇԽԱՏԵԼ ԵՎ ԱՊՐԵԼ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԲԱՐ



ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

| | № | էջ |
|---|---|---|

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



## ԱԳԻՏԱՏՈՐԻ ՏԵՂԵԿԱՏՈՒ



## ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՆՎԱՆԻ ՄԱՐԴԻԿ



## ՆՈՐ ԳՐՔԵՐ



## ՍՐԱՄԻՏ ԽՈՍՔԵՐ




Ի. տ. խմբագրի՝ Ռ. Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

էջ

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ



### ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ



### ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



### ՍՐԱՄԻՏ ԽՈՍՔԵՐ



## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕД



### В ПОМОЩЬ АГИТАТОРАМ



### ОСТРОЕ СЛОВО




Խմբագրության հասցեն—Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

Адрес редакции — Ереван. ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ի 1964 թվականի բաժանորդագրությունը.

1 ամիսը— 15 կոպեկ
6 ամիսը— 90 կոպեկ
12 ամիսը— 1 ռուբ. 80 կոպեկ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ

«ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱ» ամսագրին.

1 ամիսը— 40 կոպեկ
6 ամիսը— 2 ռուբ. 40 կոպեկ
12 ամիսը— 4 ռուբ. 80 կոպեկ

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

**Отдел идеологической работы ЦК КП Армении**

**АГИТАТОРИ БЛОКНОТ**

**№ 24**

**1963**

*ՎՖ 12418* *Պատվեր 1103* *Տիրաժ 7968*

*Հանձնված է արտադրության 16/XII 1963 թ.*
*Ստորագրված է տպագրության 24/XII 1963 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և Հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*
*Գինը 8 կոպ.։*

Ինդեքս՝ 77704